Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ,
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 3 (34)

ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»

ԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի,
ագիտացիայի յեվ մամուլի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 3 (34)

ՀԿ(բ)ԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ







# ՀԱՄ Կ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԻՑ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻՆ ՎՏԱՐԵԼԻՍ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐԱԾ ՍԽԱԼՆԵՐԻ, ՀԱՄԿ(Բ)Կ-ԻՑ ՎՏԱՐՎԱԾՆԵՐԻ ԲՈՂՈՔՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՁԵՎԱԿԱՆ-ԲՅՈՒՐՈԿՐԱՏԱԿԱՆ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԻ ԵՎ ԱՅԴ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՎԵՐԱՑՆԵԼՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ՀԱՄԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Մոտ օրերս տեղի ունեցավ ՀԱՄԿ(բ)Կ կենտրոնական կոմիտեյի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց ԽՍՀՄ Գերագույն

խորհրդի նստաշրջանի հարցերը և համապատասխան վորոշումներ ընդունեց:

Պլենումը քննարկեց «Կուսակցությունից կոմունիստներին վտարելիս կուսկազմակերպությունների կատարած սխալների, ՀամԿ(բ)Կ-ից վտարվածների բողոքների նկատմամբ ձեվական-բյուրոկրատական վերաբերմունքի և այդ թերությունները վերացնելու միջոցների մասին» հարցը և ստորեվ հրապարակվող համապատասխան վորոշումն ընդունեց:

Բացի դրանից, կենտկոմի Պլենումը քննեց մի շարք տնտեսական հարցեր և ընդունեց համապատասխան վորոշումներ:

Պլենումը ընկ. Պ. Պ. Պոստիշեվին ազատեց ՀամԿ(բ)Կ կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածուների կազմից:

Պլենումը ՀամԿ(բ)Կ կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածուների կազմի մեջ մտցրեց ՀամԿ(բ)Կ Մոսկվայի մարզկոմի քարտուղար ընկ. Ն. Ս. Խրուշչովին և ՀամԿ(բ)Կ կենտկոմի Կազմբյուրոյի կազմի մեջ— ընկ. Լ. Զ. Մեխլիսին:



## ՀԱՄ Կ(Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

### ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԻՑ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻՆ ՎՏԱՐԵԼԻՍ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐԱԾ ՍԽԱԼՆԵՐԻ, ՀԱՄԿ(Բ)Կ-ԻՑ ՎՏԱՐՎԱԾՆԵՐԻ ԲՈՂՈՔՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՁԵՎԱԿԱՆ-ԲՅՈՒՐՈԿՐԱՏԱԿԱՆ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԻ ՅԵՎ ԱՅԴ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՎԵՐԱՑՆԵԼՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՀամԿ(բ)Կ կենտկոմի Պլենումն անհրաժեշտ է համարում կուսակցական կազմակերպությունների և նրանց ղեկավարների ուշադրությունը դարձնել այն բանի վրա, վոր նրանք, մեծ աշխատանք կատարելով իրենց շարքերը ֆաշիզմի տրոցկիստական-աջ գործակալներից մաքրելու գործում, այդ աշխատանքի պրոցեսում թույլ են տալիս լուրջ սխալներ և խեղաթյուրումներ, վորոնք խանգարում են կուսակցությունը յերկերեսանիներից, լրտեսներից, վնասարարներից մաքրելու գործին: Չնայելով ՀամԿ(բ)Կ կենտկոմի հաճախակի ցուցումներին և նախազգուշացումներին, կուսակցական կազմակերպությունները շատ դեպքերում բոլորովին սխալ և հանցավոր-թեթեվամիտ*

խորհրդի նստաշրջանի հարցերը և համա-պատասխան վորոշումներ ընդունեց:

Պլենումը քննարկեց «Կուսակցությունից կոմունիստներին վտարելիս կուսկազմակերպությունների կատարած սխալների, ՀամԿ(բ)Կ-ից վտարվածների բողոքների նկատմամբ ձեվական-բյուրոկրատական վերաբերմունքի և այդ թերությունները վերացնելու միջոցների մասին» հարցը և ստորեվ հրապարակվող համապատասխան վորոշումն ընդունեց:

Բացի դրանից, կենտկոմի Պլենումը քննեց մի շարք տնտեսական հարցեր և ընդունեց համապատասխան վորոշումներ:

Պլենումը ընկ. Պ. Պ. Պոստիշեվին ազատեց ՀամԿ(բ)Կ կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածուների կազմից:

Պլենումը ՀամԿ(բ)Կ կենտկոմի Քաղբյու-
րոյի անդամության թեկնածուների կազմի
մեջ մտցրեց ՀամԿ(բ)Կ Մոսկվայի մարզկո-
մի քարտուղար ընկ. Ն. Ս. Խրուշչովին և
ՀամԿ(բ)Կ կենտկոմի Կազմբյուրոյի կազմի
մեջ— ընկ. Լ. Զ. Մեխլիսին:



# ՀԱՄ Կ(Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԻՑ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻՆ ՎՏԱՐԵԼԻՍ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐԱԾ ՍԽԱԼՆԵՐԻ, ՀԱՄԿ(բ)Կ-ԻՑ ՎՏԱՐՎԱԾՆԵՐԻ ԲՈՂՈՔՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՁԵՎԱԿԱՆ-ԲՅՈՒՐՈԿՐԱՏԱԿԱՆ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԻ ՅԵՎ ԱՅԴ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՎԵՐԱՑՆԵԼՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՀամԿ(բ)Կ կենտկոմի Պլենումն անհրաժեշտ է համարում կուսակցական կազմակերպությունների և նրանց ղեկավարների ուշադրությունը դարձնել այն բանի վրա, վոր նրանք, մեծ աշխատանք կատարելով իրենց շարքերը ֆաշիզմի տրոցկիստական-աջ գործակալներից մաքրելու գործում, այդ աշխատանքի պրոցեսում թույլ են տալիս լուրջ սխալներ և խեղաթյուրումներ, վորոնք խանգարում են կուսակցությունը յերկերեսանիներից, լրտեսներից, վնասարարներից մաքրելու գործին: Չնայելով ՀամԿ(բ)Կ կենտկոմի հաճախակի ցուցումներին և նախազգուշացումներին, կուսակցական կազմակերպությունները շատ դեպքերում բոլորովին սխալ և հանցավոր-թեթևամիտ*

կերպով են մոտենում կուսակցությունից կոմունիստներին վտարելու գործին:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմը կուսակցական կազմակերպություններից և նրանց ղեկավարներից քանիցս պահանջել է ուշադիր, անհատական մոտեցում ունենալ դեպի կուսակցության անդամները՝ կուսակցությունից վտարելու կամ ՀամԿ(բ)Կ-ից սխալ վտարվածներին կուսակցության անդամների իրավունքներում վերականգնելու հարցերը վճռելիս:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումն ընկեր Ստալինի «Կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ յերկերեսանիների լիկվիդացիայի յենթարկելու միջոցների մասին» զեկուցման առթիվ 1937 թ. մարտի 5-ի իր վորոշման մեջ մատնանշում էր.

«Մեր միքանի կուսակցական ղեկավարները տառապում են նրանով, վոր նրանց մոտ բացակայում է պատշաճ ուշադրությունը դեպի մարդիկ, դեպի կուսակցության անդամները, դեպի աշխատողները: Ավելին — նրանք չեն ուսումնասիրում աշխատողներին, չգիտեն, թե նրանք ինչով են ապրում և



ինչպես են աճում, առհասարակ չգիտեն իրենց կադրերը: Այդ իսկ պատճառով նրանց մոտ չկա անհատական մոտեցում դեպի կուսակցության անդամները, դեպի կուսակցության աշխատողները: Իսկ անհատական մոտեցումը հանդիսանում է գլխավոր գործը մեր կազմակերպչական աշխատանքում: Յեվ հենց այն պատճառով, վոր կուսակցության անդամներին և կուսակցական աշխատողներին գնահատելիս նրանց մոտ չկա անհատական մոտեցում, նրանք սովորաբար գործում են առանց կշռադատելու. նրանք կամ անհիմն կերպով, չափից դուրս գովում են նրանց, կամ նույնպես անհիմն կերպով, չափից դուրս վատաբանում, հազարներով և տասնյակ հազարներով վտարում են կուսակցությունից: Մեր միքանի կուսակցական ղեկավարներն առհասարակ աշխատում են մտածել տասնյակ հազարների մասին, հոգ չտանելով «միավորների» մասին, կուսակցության առանձին անդամների մասին, նրանց բախտի մասին: Նրանք դատարկ բան են համարում կուսակցու-

թյունից հազարավոր և տասնյակ հազարավոր մարդկանց վտարելը, մխիթարելով իրենց նրանով, որ մեր կուսակցությունը մեծ է և տասնյակ հազարավոր վտարվածները չեն կարող որևէ բան փոխել կուսակցության դրության մեջ: Սակայն կուսակցության անդամներին այդպես կարող են մոտենալ միայն այն մարդիկ, որոնք ըստ գործի էության խորապես հակակուսակցական են:

Դեպի մարդիկ, դեպի կուսակցության անդամները և կուսակցական աշխատողներն այդպիսի անհոգի վերաբերմունքի հետևանքով կուսակցության մի մասում արհեստականորեն ստեղծվում է դժգոհություն և գազազում:

Հասկանալի յե, որ տրոցկիստական յերկերեսանիները ճարպկորեն բռնում են այդպիսի չարացած ընկերներին և նրանց իրենց հետևից վարպետորեն քարշ են տալիս դեպի տրոցկիստական վնասարարության ճահիճը»:



ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումի այդ նույն վորոշման մեջ ասված է.

«Դատապարտել կուսակցության առանձին անդամների բախտի, կուսակցության անդամներին կուսակցությունից վտարելու կամ վտարվածներին կուսակցության անդամների իրավունքներում վերականգնելու հարցի նկատմամբ ձևական և անհոգի-բյուրոկրատական վերաբերմունքի պրակտիկան:

Պարտավորեցնել կուսակցական կազմակերպություններին ցուցաբերել առավելագույն զգուշություն և ընկերական հոգատարություն կուսակցությունից վտարելու կամ վտարվածներին կուսակցության անդամների իրավունքներում վերականգնելու հարցը վճռելիս»:

«Կուսակցական փաստաթղթերի ստուգման և փոխանակման ժամանակ կուսակցությունից վտարվածների բողոքների քննարկման գործում յեղած սխալների մասին» 1936 թ. հունիսի 24-ի նամակում ՀամԿ(բ)Կ Կենտկոմը մատնանշում եր կուսակցական օրգանների վոչ լուրջ, իսկ մի շարք դեպքերում անհոգի—չինովնիկական վերաբեր-

մունքը կուսակցությունից վտարվածների
բողոքների քննարկման նկատմամբ։
«Հակառակ կենտկոմի ցուցումնե-
րին,— ասված է այդ նամակում,—
վտարվածների բողոքները չափազանց
դանդաղ են քննարկվում։ Շատ վտար-
վածներ ամիսներով աշխատում են
քննարկել տալ իրենց տված բողոքնե-
րը։ Մեծ քանակությամբ բողոքներ
քննվել են հեռակա կարգով, առանց վո
րևէ կերպ ստուգելու բողոքողների
դիմումները, առանց բողոքողների հա-
մար ապահովելու կուսակցությունից
նրանց վտարման պատճառների առթիվ
մանրամասն բացատրություններ տալու
հնարավորությունը։

Մի շարք շրջանային կուսակցական
կազմակերպություններում կուսակցու-
թյունից վտարվածների նկատմամբ
թույլ է տրվել բոլորովին անհանդուր-
ժելի կամայականություն։ Սոցիալա-
կան ծագումը թաքցնելու և պասիվու-
թյան համար, և ոչ թե կուսակցու-
թյան և խորհրդային իշխանության
դեմ նրանց թշնամական գործունեու-
թյան համար կուսակցությունից վը-



տարվածներին ավտոմատ կերպով հա-
նում էին աշխատանքից, զրկում բը-
նակարաններից և այլն։
Այսպիսով այդ կուսկազմակերպություն
ների կուսակցական ղեկավարները, ինչ-
պես հարկն է չյուրացնելով կուսակ-
ցության ցուցումները բոլշևիկյան ըզ-
գաստության մասին, կուսակցական
փաստաթղթերի ստուգման ժամանակ
վտարվածների բողոքների քննարկման
նկատմամբ ցուցաբերած իրենց ձևա-
կան—բյուրոկրատական վերաբերմուն-
քով օգնել են կուսակցության թշնամի-
ներին»։

Ինչպես երևում է, տեղական կուսակ-
ցական կազմակերպություններին նախա-
զգուշացնող ցուցումներ եղել են։

Բայց այնուամենայնիվ, չնայելով դրան,
շատ կուսկազմակերպություններ և նրանց
ղեկավարները շարունակում են ձևականո-
րեն և անհոգի—բյուրոկրատաբար վերաբեր-
վել դեպի կուսակցության առանձին ան-
դամների բախտը։

Հայտնի են շատ փաստեր, երբ կու-
սակցական կազմակերպություններն առանց
որևէ ստուգման և, հեռակաբար, անհիմն

կերպով կոմունիստներին վտարում են կուսակցությունից, նրանց զրկում աշխատանքից, հաճախ նույնիսկ առանց որևէ հիմքի հայտարարում են ժողովրդի թշնամիներ, կուսակցության անդամների նկատմամբ ապորինություն և կամայականություն են գործադրում:

Այսպես, օրինակ, Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմը 1937 թ. նոյեմբերի 5-ի մեկ նիստում մեխանիկորեն հաստատեց 279 հոգու կուսակցությունից վտարելը. Ստալինգրադի մարզկոմը նոյեմբերի 26-ին հաստատեց 69 հոգու վտարումը. Նովոսիբիրսկի մարզկոմը նոյեմբերի 28-ին մեխանիկորեն հաստատեց ՀամԿ(բ)Կ շրջկոմների որոշումները՝ 72 հոգու կուսակցությունից վտարելու մասին. ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից՝ Կուսակցական Վերահսկողության Հանձնաժողովի Կուսկոլեգիան Օրջոնիկիձեյի երկրային կուսակցական կազմակերպությունում 160 բողոքարկածներից վերացրեց 101 կոմունիստի կուսակցությունից վտարելու վերաբերյալ որոշումները, որպես սխալ և բոլորովին անհիմն որոշումներ. Նովոսիբիրսկի կուսակցական կազմակերպությունում նույն կերպ հարկավոր



յեղավ վերացնել 80 որոշումից 51-ը. Ռոստովի կուսկազմակերպությունում վերացված են 66 որոշումներից 43-ը. Ստալինգրադի կուսկազմակերպությունում— 103-ից 58-ը, Սարատովի կուսկազմակերպությունում—134-ից 80-ը, Կուրսկի կուսկազմակերպությունում — 92-ից 56-ը, Վիննիցայի կուսկազմակերպությունում —337-ից 164-ը և այլն:

Խարկովի մարզի շատ շրջաններում «ըզգաստության» պատրվակի տակ կան աշխատանքից ապորինի կերպով արձակելու և կուսակցությունից վտարվածներին ու անկուսակցական աշխատողներին աշխատանք տալուց հրաժարվելու բազմաթիվ փաստեր: Զմիյեվսկի շրջանում 1937 թ. հոկտեմբերին և նոյեմբերին առանց պատճառի աշխատանքից հանված են 36 ուսուցիչներ և նշված է հեռացնել ևս 42-ին: Դրա հետևանքով Տարանովկա, Զամոստյաժնոյե, Սկրիպայեվկա և այլ գյուղերի դպրոցներում պատմություն, ԽՍՀՄ Սահմանադրություն, ռուսերեն, ուկրաիներեն և օտար լեզուներ չեն դասավանդում:

Զմիյեվ քաղաքում միջնակարգ դպրոցում կենսաբանություն էր դասավանդում ուսուցչուհի Ժուրկոն, 1904 թ. ծնված,

կոլտնտեսականի դուստր, Ց-ամյա մանկավարժական ստաժ ունեցող, մանկավարժական ինստիտուտի չորրորդ կուրսի հեռակայող: Տեղական թերթում տպվեց մի թղթակցություն Իզյում քաղաքում վորպես ուսուցիչ աշխատող նրա յեղբոր մասին՝ իբրև նացիոնալիստի: Այդ բավական յեղավ Ժուրկոյին աշխատանքից հեռացնելու համար: Ընկ. Ժուրկոյի հեռացման կապակցությամբ արտահայտվեց քաղաքական անվստահություն նրա ամուսնուն և հարց բարձրացվեց նաև նրան հեռացնելու մասին: Մինչդեռ ստուգման ժամանակ պարզվեց, վոր Ժուրկոյի յեղբոր վերաբերյալ թղթակցությունը զրպարտություն է և նա չհանվեց աշխատանքից:

Խարկով քաղաքում մի ձերբակալված տրոցկիստի— Գորսկայայի գործի վերաբերյալ ՆԳԺԿ օրգաններն իբր վկա հարցաքննեցին Տինյակովի անվան Ֆաբրիկայի գործարկոմի կին աշխատող Ենդորնին: Իրեն ՆԳԺԿ կանչելու մասին նա խոսեց հատուկ բաժնի պետ Սեմյոնկովի հետ, վորը դրանից հետո գործարանի կուսկոմում անհապաղ հարց դրեց, թե Ենդորնը կապեր ունի տրոցկիստ Գորսկայայի հետ: Հետե-



վանքն այն յեղավ, վոր Ենդորնը հանվեց գործարկոմում աշխատելուց և հեռացվեց: Ենդորնի քրոջ ամուսինը, վոր աշխատում էր տեղական թերթի խմբագրատանը, հեռացված է այն պատճառով, վոր «չի հաղորդել տրոցկիստների հետ իր կնոջ քրոջ ունեցած կապի մասին»:

ՀամԿ(բ)Կ Կուրսկի մարզկոմն առանց վորեվե ստուգման, հեռակայությամբ կուսակցությունից հեռացրել և, ձերբակալել է տվել կուսակցության անդամ, Դիմիտրո-Տարանովսկի շաքարագործարանի գործարկոմի նախագահ Իվանչենկովային, նրան վերագրելով այն բանը, վոր իբր թե նա գիտակցաբար և հակահեղափոխականորեն նախապատրաստել է անկուսակցական բանվոր Կուլինիչենկոյի յելույթը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նախընտրական ժողովում: Ստուգման ժամանակ հաստատված է, վոր Իվանչենկովայի ամբողջ «մեղքն» այն է յեղել, վոր նախընտրական ժողովում անկուսակցական բանվոր Կուլինիչենկոն իր կյանքի մասին պատմելուց հետո շփոթվել է իր յելույթում և մոռացել է ասել Գերագույն Խորհրդի պատգամավորության թեկնածուի ազգանունը:

Կույբիշեվի մարզի շատ շրջաններում կուսակցությունից վտարվել են մեծ քանակությամբ կոմունիստներ այն պատճառաբանությամբ, թե նրանք ժողովրդի թշնամիներ են: Մինչդեռ ՆԳԺԿ օրգանները վոչ մի հիմք չեն գտնում կուսակցությունից այդ վտարվածներին ձերբակալելու համար: Օրինակ՝ Համկ(բ)Կ Բոլշե-Չերնիգովսկի շրջկոմը կուսակցությունից վտարել և ժողովրդի թշնամիներ է հայտարարել շրջանային կուսկազմակերպության մեջ յեղած 210 կոմունիստների ընդհանուր քանակից 50 հոգու, մինչդեռ ՆԳԺԿ օրգանները վոչ մի հիմք չեն գտել այդ վտարվածներից 43 հոգու ձերբակալելու համար: Կույբիշեվի մարզի գծով Համկ(բ)Կ կենտկոմին կից Կուսակցական Վերահսկողության Հանձնաժողովի կուսկոլեգիա յեն ներկայանում Համկ(բ)Կ շրջկոմների կողմից իբր ժողովրդի թշնամիներ վտարված շատ մարդիկ, պահանջելով կամ ձերբակալել իրենց, կամ թե իրենց վրայից վերացնել խայտառակության դրոշմը:

Համկ(բ)Կ կենտկոմն ունի տվյալներ այն մասին, վոր այդպիսի փաստեր տեղի ունեն նաև մյուս կուսկազմակերպություններում:



Համկ(բ)Կ կենտկոմի Պլենումը գտնում է, վոր այդ բոլոր և դրանց նման փաստերը տարածված կուսկազմակերպություններում այն պատճառով, վոր կոմունիստների մեջ գոյություն ունեն, դեռ են ամենից առաջ
չեն հայտարարվել ու մերկացվել առանձին
կարյերիստ-կոմունիստներ, վորոնք աշխատում են կուսակցությունից յեղած վտարումների, կուսակցության անդամների դեմ ռեպրեսիաներ գործադրելու միջոցով աչքի ընկնել և առաջ քաշվել, աշխատում են իրենց ապահովագրել զգաստության սպառնալիքով
կասության հնարավոր մեղադրանքներից, գործադրելով անհիմն ռեպրեսիաներ կուսակցության անդամների դեմ:

Այդպիսի կարյերիստ-կոմունիստը կարծում է, թե քանի վոր կուսակցության անդամի դեմ հայտարարություն է տրված, թեկուզ և սխալ կամ նույնիսկ պրովոկացիոն, նա, կուսակցության այդ անդամը, վտանգավոր է կազմակերպության համար և նրանից պետք է շուտ ազատվել իրեն վորպես զգաստ մարդ ապահովագրելու համար: Այս պատճառով նա ավելորդ է համարում օբյեկտիվորեն քննարկել կոմունիստին ներկայացված մեղադրանքները և

*վաղորոք կանխորոշում է, որ անհրաժեշտ է նրան հեռացնել կուսակցությունից։*

*Այդպիսի կարյերիստ-կոմունիստը ցանկանալով քննության միջոցով բարձրանալ, առանց այլևայլության խուճապ է տարածում ժողովրդի թշնամիների վերաբերյալ և կուսժողովներում թեթևամտությամբ աղաղակում է կուսակցության անդամներին կուսակցությունից որևէ ձևական հիմքով կամ առանց որևէ հիմքի վտարելու մասին։ Իսկ կուսակցական կազմակերպությունները հաճախ են իրենց սանձը տալիս այդպիսի աղմկարար-կարյերիստներին։*

*Այդպիսի կարյերիստ-կոմունիստը անտարբեր է վերաբերվում դեպի կուսակցության անդամների բախտը և պատրաստ է հայտնապես սխալ կերպով կուսակցությունից վտարել տասնյակներով կոմունիստների, որպեսզի ինքը զգաստ յերեվա։ Նա պատրաստ է սխալ կարեվոր զանցառությունների համար կուսակցության անդամներին վտարել կուսակցությունից այն հաշվով, որպեսզի իրեն «արժանիքներ» վերագրի թշնամիներին մերկացնելու գործում, իսկ յեթե վերադաս կուսակցական օրգանները վերականգնում են կուսակ-*



*ցությունից սխալ կերպով վտարվածներին, նա ամենևին չի շփոթվում, ընդունում է այն մարդու պոզան, որը գոհ է նրանով, թե ինքը համենայն դեպս վերապահովագրվեց «զգաստության» նկատմամբ։*

*Կուսակցական կազմակերպությունները և նրանց ղեկավարները փոխանակ այդպիսի «կոմունիստներից» պատռելու կեղծ զգաստության դիմակը և նրանց ջրի յերես հանելու, հաճախ իրենք են կուսակցության շարքերի մաքրության համար զգաստ մարտընչողների լուսապսակ ստեղծում նրանց համար։*

Ժամանակ է մերկացնելու այդպիսի, թող թույլ տրվի ասել, կոմունիստներին և դատապարտել նրանց որպես կարյերիստների, որոնք աշխատում են բարձրանալ կուսակցությունից կատարվող վտարումների միջոցով, աշխատում են կուսակցության անդամների դեմ ռեպրեսիաներ գործադրելու միջոցով վերապահովագրել իրենց։

*Այնուհետև հայտնի յեն ոչ սակավ փաստեր, յերբ ժողովրդի դիմակավորված թշնամիները, վնասարար-յերկերեսանիները պրովոկացիոն նպատակներով կազմակերպում են կուսակցության անդամների դեմ*

զրպարտիչ հայտարարություններ տալը և «զգաստությունը ծավալելու» պատրվակի տակ ձգտում են ՀամԿ(բ)Կ շարքերից վտարել ազնիվ և նվիրված կոմունիստներին, դրանով իսկ իրենցից հեռացնելով հարվածը և իրենց պահելով կուսակցության շարքերում:

ՀամԿ(բ)Կ Ռոստովի մարզկոմի կուսակցական ղեկավար օրգանների բաժնի նախկին վարիչ՝ ժողովրդի մերկացված թշնամի Շացկին և նրա գործակիցները, օգտվելով ՀամԿ(բ)Կ Ռոստովի մարզկոմի ղեկավարների քաղաքական կարճատեսությունից, կուսակցությունից վտարում էին ազնիվ կոմունիստներին, ակնհայտնի սխալ տույժերի էին ենթարկում աշխատողներին, ամեն կերպ չարացնում էին կոմունիստներին, միաժամանակ անելով այն ամենն, ինչ վոր հնարավոր է, վորպեսզի կուսակցության մեջ պահեն իրենց հակահեղափոխական կադրերին:

Նույն Ռոստովում ՀամԿ(բ)Կ Ռոստովի մարզկոմի դպրոցական բաժնի նախկին վարիչ, ժողովրդի թշնամի Շեստովան հակահեղափոխական կազմակերպության առաջադրությամբ Ռոստովի մանկավարժական



ինստիտուտի կուսկազմակերպության մեջ անցկացրեց մոտ 30 ազնիվ կոմունիստների վտարումը կուսակցությունից:

Ուկրաինայի Կ(բ)Կ Կիևի մարզկոմի նախկին քարտուղար, ժողովրդի թշնամի Կուդրյավցեվը կուսակցական ժողովներում շարունակ դիմում էր յելույթ ունեցող կոմունիստներին այսպիսի պրովոկացիոն հարցով. «Իսկ դուք գոնե վորևե մեկի մասին հայտարարություն գրե՞լ եք»: Այդ պրովոկացիայի հետևանքով Կիևում տվեցին քաղաքականապես վարկաբեկիչ հայտարարություններ քաղաքային կուսկազմակերպության անդամների գրեթե կեսի վերաբերյալ, ընդվորում հայտարարությունների մեծ մասը դուրս յեկավ պարզապես սխալ ու նույնիսկ պրովոկացիոն:

ՀամԿ(բ)Կ Ստալինգրադ քաղաքի Բարրիկադյան շրջկոմի այժմ մերկացված թշնամի ղեկավարությունը պրովոկացիոն կերպով կուսակցությունից վտարեց և ձերբակալել տվեց «Բարրիկադներ» գործարանի խոշորագույն ցեխերից մեկի պետ, 1917 թվից կուսակցության անդամ, նախկին կարմիր պարտիզան Մոխնատկինին, «հակախորհրդային խոսակցությունների» համար: Ինչ-

պես ստուգումից պարզվեց, այդ «հակա-խորհրդային խմբակցությունները» կայա-նում էին նրանում, որ ընկ. Մոխնատ-կինն ընկերների հետ զրուցելիս դժգոհու-թյուն էր հայտնել, թե գյուղխորհուրդն անհոգի վերաբերմունք է ցույց տալիս բա-սմաչների դեմ մարտում ընկած, քաղա-քացիական պատերազմի տարիներում պար-տիզանական ջոկատի մի հրամանատարի յերեխաների նկատմամբ, որպիսի ջոկա-տում Մոխնատկինը յեղել է հրամանատարի օգնական: Ընկեր Մոխնատկինը կուսակ-ցության անդամի իրավունքներում վերա-կանգնվել է միայն Համկ(բ)Կ Կենտկոմի Կուսակցական Վերահսկողության Հանձնա-ժողովի միջամտությունից հետո:

Կուսակցության ապարատը խցկված՝ կու-սակցության թշնամիների պրովոկացիոն աշխատանքի այդպիսի փաստեր տեղի յեն ունեցել նաև Վորոնեժի, Կրասնոդարի, Չե-լյաբինսկի և այլ կուսակցական կազմա-կերպություններում:

Այդ բոլոր փաստերը ցույց են տալիս, վոր մեր կուսակցական շատ կազմակերպու-թյուններ և նրանց ղեկավարները մինչև այժմ չեն կարողացել տեսնել և մերկացնել



վարպետորեն դիմակավորված թշնամուն, վորն աշխատում է զգաստության վերա-բերյալ ճիչերով քողարկել իր թշնամու-թյունն ու մնալ կուսակցության շարքե-րում— այս նախ,— և յերկրորդ, վորը ձգտում է ռեպրեսիաների միջոցներ գոր-ծադրելու ճանապարհով ջլատել մեր բոլ-շևիկյան կադրերը, անվստահություն և ավելորդ կասկածոտություն սերմանել մեր շարքերում:

Այդպիսի քողարկված թշնամին՝ ամենա-կատաղի դավաճանը սովորաբար բոլորից ավելի բարձր է գոռում զգաստության մա-սին, շտապում է վորքան կարելի յե շատ «մերկացնել» և այդ բոլորն անում է մի նպատակով՝ թաքցնել կուսակցության ա-ռաջ կատարած իր սեփական հանցագոր-ծությունները և կուսակցական կազմակեր-պության ուշադրությունը հեռացնել ժո-ղովրդի իսկական թշնամիներին մերկացնե-լուց:

Այդպիսի քողարկված թշնամին՝ դավրե-լի յերկերեսանին ամեն կերպ ձգտում է կուսկազմակերպություններում ստեղծել ա-վելորդ կասկածանքի պայմաններ, վորով վորևէ մեկի կողմից զրպարտված կոմու-

նիստի պաշտպանության համար հանդես
եկող կուսակցության յուրաքանչյուր ան-
դամին անհապաղ մեղադրում են զգաստու-
թյան բացակայության և ժողովրդի թշնա-
միների հետ կապ ունենալու մեջ:

Այդպիսի քողարկված թշնամին՝ սուր
պրովոկատորն այն դեպքերում, երբ կուս-
կազմակերպությունն սկսում է ստուգել
կոմունիստի մասին տրված հայտարարու-
թյունը, ամեն կերպ պրովոկացիոն իրադ-
րություն է ստեղծում այդ ստուգման հա-
մար, կոմունիստի շուրջը քաղաքական ան-
վստահության մթնոլորտ է սերմանում, և
հենց դրանով, փոխանակ օբյեկտիվորեն
քննելու գործը, նոր հայտարարություննե-
րի հեղեղ է կազմակերպում նրա դեմ:

Կուսակցական կազմակերպությունները և
նրանց ղեկավարները, փոխանակ հայտնա-
բերելու և մերկացնելու այդպիսի քողարկ-
ված թշնամու պրովոկացիոն աշխատանքը,
հաճախ սանձը տալիս են նրա ձեռքը, նրա
համար պայմաններ են ստեղծում անպատիժ
կերպով զրպարտելու ազնիվ կոմունիստնե-
րին և իրենք էլ բռնում են կուսակցությու-
նից մասսայական անհիմն վտարումներ կա-
տարելու, տույժեր նշանակելու ուղին և այ-



լըն: Ավելին,— նույնիսկ կուսակցական ա-
պարատը խցկված և ազնիվ կոմունիստնե-
րին զրպարտող թշնամիներին մերկացնելուց
հետո էլ հաճախ մեր կուսակցական ղեկա-
վարները միջոցներ չեն ձեռք առնում կո-
մունիստներին կուսակցությունից սխալ
կերպով վտարելու նկատմամբ կուսակցա-
կան կազմակերպություններում յեղած վը-
նասարարության հետևանքները լիկվիդա-
ցիայի ենթարկելու համար:

Ժամանակ է, որ բոլոր կուսակցական
կազմակերպությունները և նրանց ղեկա-
վարները մերկացնեն և մինչև վերջը ո-
չընչացնեն դիմակավորված թշնամուն, ո-
րը խցկվել է մեր շարքերը և աշխատում է
զգաստության վերաբերյալ կեղծ ճիչերով
թաքցնել իր թշնամությունը և իրեն պահել
կուսակցության մեջ, որպեսզի այնտեղ
շարունակի իր նողկալի դավաճանական աշ-
խատանքը:

Ինչո՞վ բացատրել, որ մեր կուսակցա-
կան կազմակերպությունները մինչև այժմ
չեն մերկացրել և չեն դատապարտել ոչ
միայն կարյերիստ-կոմունիստներին, որոնք
աշխատել են աչքի ընկնել և առաջ քաշվել՝
կուսակցությունից կատարված վտարումնե-

րի հաշվին, այլև կուսակցության ներսում
գտնվող քողարկված թշնամիներին, վորոնք
աշխատում են զգաստության վերաբերյալ
աղաղակներով թաքցնել իրենց թշնամու-
թյունը և մնալ կուսակցության մեջ, աշ-
խատում են ռեպրեսիաների միջոցներ կի-
րառելու ճանապարհով ջլատել մեր բոլշևի-
կյան կադրերը և ավելորդ կասկածոտու-
թյուն սերմանել մեր շարքերում:

Այդ բացատրվում է հանցավոր-թեթեվա-
միտ վերաբերմունքով դեպի կուսակցու-
թյան անդամների բախտը:

Բոլորին հայտնի յե, վոր մեր կուսակցա-
կան շատ ղեկավարներ հանդիսացան քաղա-
քականորեն կարճատես գործամոլներ, ժո-
ղովրդի թշնամիներին և կարյերիստներին
թույլ տվին շրջանցել իրենց և կուսակցու-
թյան անդամների բախտին վերաբերող
հարցերի լուծումը թեթևամտորեն կապալով
տվին յերկրորդական աշխատողներին, հան-
ցագործ կերպով մի կողմ քաշվելով այդ
գործի ղեկավարությունից:

Մարզկոմները, յերկրկոմները, ազգային
կոմկուսակցությունների կենտկոմներն ու
նրանց ղեկավարները վոչ միայն չեն ուղ-
ղում կուսակցությունից կոմունիստներին

26

վտարելու գործում յեղած հակակուսակցա-
կան, բոլշևիզմին խորթ պրակտիկան, այլև
հաճախ իրենք իրենց սխալ ղեկավարու-
թյամբ ձևական և անհոգի-բյուրոկրատա-
կան վերաբերմունք են սերմանում դեպի
կուսակցության անդամները և դրանով իսկ
ստեղծում են բարենպաստ պայմաններ
կարյերիստ-կոմունիստների և կուսակցու-
թյան՝ դիմակավորված թշնամիների հա-
մար:

Չի յեղել վոչ մի դեպք, վոր մարզկոմ-
ները, յերկրկոմները, ազգային կոմկուսակ-
ցությունների կենտկոմները, ըմբռնելով
գործը, դատապարտեն դեպի կուսակցու-
թյան անդամներն անհոգի, ընդհանուր մո-
տեցում ունենալու պրակտիկան, պատաս-
խանատվության յենթարկեն տեղական կու-
սակցական կազմակերպություններին՝ կու-
սակցությունից կոմունիստներին անհիմն և
սխալ կերպով վտարելու համար:

Կուսակցական կազմակերպությունների
ղեկավարները պարզամտորեն գտնում են,
վոր սխալ վտարվածների նկատմամբ յեղած
սխալների ուղղումը կարող է գցել կուսակ-
ցության հեղինակությունը և վնասել ժո-
ղովրդի թշնամիների մերկացման գործին,

*րի հաշվին, այլև կուսակցության ներսում գտնվող քողարկված թշնամիներին, որոնք աշխատում են զգաստության վերաբերյալ աղաղակներով թաքցնել իրենց թշնամությունը և մնալ կուսակցության մեջ, աշխատում են ռեպրեսիաների միջոցներ կիրառելու ճանապարհով ջլատել մեր բոլշևիկյան կադրերը և անվերջ կասկածոտություն սերմանել մեր շարքերում:*

Այդ բացատրվում է հանցավոր-թեթևամիտ վերաբերմունքով դեպի կուսակցության անդամների բախտը:

*Բոլորին հայտնի է, որ մեր կուսակցական շատ ղեկավարներ հանդիսացան քաղաքականորեն կարճատես գործամոլներ, ժողովրդի թշնամիներին և կարյերիստներին թույլ տվին շրջանցել իրենց և կուսակցության անդամների բախտին վերաբերող հարցերի լուծումը թեթևամտորեն կապալով տվին յերկրորդական աշխատողներին, հանցագործ կերպով մի կողմ քաշվելով այդ գործի ղեկավարությունից:*

*Մարզկոմները, յերկրկոմները, ազգային կոմկուսակցությունների կենտկոմներն ու նրանց ղեկավարները ոչ միայն չեն ուղղում կուսակցությունից կոմունիստներին*



*վտարելու գործում յեղած հակակուսակցական, բոլշևիզմին խորթ պրակտիկան, այլև հաճախ իրենք իրենց սխալ ղեկավարությամբ ձևական և անհոգի-բյուրոկրատական վերաբերմունք են սերմանում դեպի կուսակցության անդամները և դրանով իսկ ստեղծում են բարենպաստ պայմաններ կարյերիստ-կոմունիստների և կուսակցության՝ դիմակավորված թշնամիների համար:*

*Չի յեղել ոչ մի դեպք, որ մարզկոմները, յերկրկոմները, ազգային կոմկուսակցությունների կենտկոմները, ըմբռնելով գործը, դատապարտեն դեպի կուսակցության անդամներն անհոգի, ընդհանուր մոտեցում ունենալու պրակտիկան, պատասխանատվության յենթարկեն տեղական կուսակցական կազմակերպությունների՝ կուսակցությունից կոմունիստներին անհիմն և սխալ կերպով վտարելու համար:*

*Կուսակցական կազմակերպությունների ղեկավարները պարզամտորեն գտնում են, որ սխալ վտարվածների նկատմամբ յեղած սխալների ուղղումը կարող է գցել կուսակցության հեղինակությունը և վնասել ժողովրդի թշնամիների մերկացման գործին,*

— առանց հասկանալու, վոր կուսակցությունից սխալ վտարելու յուրաքանչյուր դեպք ձեռնտու է կուսակցության թշնամիներին:

Մարզային ու յերկրային շատ կազմակերպություններում առանց վորևէ ընթացք տանելու ընկած են մեծ քանակությամբ չքննված բողոքներ: Ռոստովի մարզում չի քննված ավելի քան 2·500 բողոք, Կրասնոդարի յերկրամասում— 2·000, Սմոլենսկի մարզում— 2·300, Վորոնեժի մարզում— 1·200, Սարատովի մարզում— 500 և այլն:

Մարզկոմները, յերկրկոմները, ազգային կոմկուսակցությունների կենտկոմները, հրաժարվելով վտարվածների բողոքները քննարկելուց, հակառակ կուսակցության կանոնադրության, այդ հարցի վերաբերյալ ՀամԿ(բ)Կ շրջկոմների և քաղկոմների վորոշումները դարձրել են անվճռաբեկ և վերջնական վորոշումներ:

Այդ բոլորը նշանակում է, վոր մարզկոմները, յերկրկոմները, ազգային կոմկուսակցությունների կենտկոմներն ըստ եյության մի կողմ են քաշվել ամենակարևոր և սուր հարցում—կուսակցության անդամների բախտի հարցում—տեղական կուսակցական կազմակերպությունների գոր-



ծունեյությունը ղեկավարելուց, այդ հարցի լուծումը մատնելով ինքնահոսի, իսկ հաճախ նաև կամայականության:

Մարզկոմները, յերկրկոմները, ազգային կոմկուսակցությունների կենտկոմներն իրենք են կուսակցությունից մասսայական, անհիմն վտարումների պրակտիկան խրախուսում նրանով, վոր անպատիժ են թողնում կուսակցական այն ղեկավարներին, վորոնք կոմունիստների վերաբերմամբ կամայականություն են թույլ տալիս:

Ժամանակ է վերջ տալու դեպի մարդիկ, դեպի կուսակցության անդամները բոլշևիկներին խորթ ձևական և անհոգի-բյուրոկրատական վերաբերմունքին:

Ժամանակ է հասկանալու, վոր

> «Կուսակցության անդամի համար կուսակցությունը դարձել է շատ մեծ և լուրջ գործ և կուսակցության անդամությունը կամ կուսակցությունից վտարվելը՝ այդ մեծ բեկում է մարդու կյանքում»:

Ժամանակ է հասկանալու, վոր

> «Կուսակցության շարքային անդամների համար կուսակցության մեջ գտնվելը կամ կուսակցությունից վտ-

տարվելը,— այդ կյանքի և մահվան հարց է» (Ստալին):

Ժամանակ է հասկանալու, որ բոլշևիկյան զգաստության էությունն այն է, որ պետք է կարողանալ մերկացնել թշնամուն, որքան էլ վերջինս լինի խորամանկ և ճկուն, ինչպիսի քողի էլ հագած լինի նա, և ոչ թե այն, որ առանց քննության կամ «համենայն դեպս» կուսակցությունից տասնյակներով և հարյուրներով վտարեն բոլոր նրանց, ովքեր պատահեն:

Ժամանակ է հասկանալու, որ բոլշևիկյան զգաստությունը ոչ միայն չի բացառում, այլ ընդհակառակը ենթադրում է առավելագույն զգուշություն և ընկերական հոգատարություն ցուցաբերելու կարողություն այն ժամանակ, երբ վճռվում են կուսակցությունից վտարելու կամ վտարվածներին կուսակցության անդամների իրավունքներում վերականգնելու հարցերը:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումը կուսակցական բոլոր կազմակերպություններից և նրանց ղեկավարներից պահանջում է ըստ ամենայնի բարձրացնել կուսակցական մասսաների բոլշևիկյան զգաստությունը, մերկացնել և մինչև վերջ արմատախիլ անել



կուսակցության բոլոր կամա թե ակամա թշնամիներին:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումն այդ խնդիրը հաջողությամբ լուծելու կարևորագույն պայմանը համարում է դեպի մարդիկ, դեպի կուսակցության անդամներն անհիմն, ոչ անհատական, ընդհանուր մոտեցում ունենալու հակակուսակցական պրակտիկայի անմնացորդ լիկվիդացիան:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումը վորոշում է.

1. Պարտավորեցնել մարզկոմներին, երկըրկոմներին, ազգային կոմկուսակցությունների կենտկոմներին և բոլոր կուսակցական կազմակերպություններին՝ վըճռականապես վերջ տալ կուսակցությունից մասսայական, անհիմն վտարումներին և իրականում սահմանել անհատական դիֆերենցիալ մոտեցում՝ կուսակցությունից վտարելու կամ վտարվածներին կուսակցության անդամների իրավունքներում վերականգնելու հարցերը վճռելիս:

2. Պարտավորեցնել մարզկոմներին, երկըրկոմներին, ազգային կոմկուսակցությունների կենտկոմներին՝ կուսակցական պոստերից հանել և կուսակցական պատաս-

խանատվության յենթարկել կուսակցական այն ղեկավարներին, վորոնք չեն կատարում Համկ(բ)Կ կենտկոմի դիրեկտիվները, Համկ(բ)Կ անդամներին և թեկնածուներին կուսակցությունից վտարում են առանց բոլոր նյութերը մանրակրկիտ կերպով ստուգելու և կուսակցության անդամների վերաբերմամբ կամայականություն են թույլ տալիս:

3. Առաջարկել մարզկոմներին, յերկրկոմներին, ազգային կոմկուսակցությունների կենտկոմներին և Համկ(բ)Կ կենտկոմին կից Կուսակցական Վերահսկողության Հանձնաժողովի կուսկոլեգիաներին՝ յերեք ամսվա ընթացքում ավարտել կուսակցությունից բոլոր վտարվածների բողոքների քննությունը:

4. Պարտավորեցնել բոլոր կուսակցական կոմիտեներին՝ կուսակցությունից կոմունիստներին վտարելու իրենց վորոշումներում պարզ ու ճշգրիտ շարադրել այն պատճառաբանությունները, վորոնք վտարելու հիմք են ծառայել,— վորպեսզի վերադաս կուսակցական որգանները հնարավորություն ունենան ստուգելու այդ վորոշումների ճշտությունը, իսկ շրջկոմի, քաղ-



կոմի, մարզկոմի կամ ազգային կոմկուսակցության կենտկոմի յուրաքանչյուր այդպիսի վորոշում անպայման հրապարակել մամուլում:

5. Սահմանել, վոր կուսակցական որգանները, տեղական կուսկազմակերպությունների կողմից սխալ վտարվածներին վերականգնելով կուսակցության անդամների իրավունքներում, պարտավոր են իրենց վորոշումներում ճշտությամբ մատնանշել, թե Համկ(բ)Կ վո՞ր շրջկոմը, քաղկոմը պետք է կուսակցական փաստաթղթեր տա կուսակցության մեջ վերականգնվածներին:

6. Պարտավորեցնել կուսակցության շրջկոմներին, քաղկոմներին՝ անհապաղ տալ կուսակցության մեջ վերականգնվածներին կուսակցական փաստաթղթեր, նրանց մասնակից դարձնել կուսակցական աշխատանքին և բացատրել սկզբնական կուսկազմակերպությունների բոլոր անդամներին, վոր նրանք պատասխանատու յեն Համկ(բ)Կ շարքերում վերականգնվածների բոլշևիկյան դաստիարակության համար:

7. Պարտավորեցնել կուսակցական կազմակերպություններին՝ կուսակցական պատասխանատվության յենթարկել այն ան-

ձանց, վորոնք մեղավոր են կուսակցության անդամներին զրպարտելու մեջ, լիովին վերականգնել կուսակցության այդ անդամների վարկը և մամուլում հրապարակել իրենց վորոշումներն այն դեպքերում, յերբ մամուլում նախապես զետեղվել եյին կուսակցության անդամին վարկաբեկող նյութեր:

8. Կուսկազմակերպություններին արգելել՝ մինչև բողոքների քննությունը և վըտարման վերաբերյալ վերջնական վորոշում ընդունելը կոմունիստի հաշվառման քարտում կուսակցությունից վտարվելու փաստի գրանցումը:

9. Արգելել այն սխալ, մեխանիկական պըրակտիկան, յերբ ՀամԿ(բ)Կ-ից վտարվածներին անհապաղ հանում են իրենց զբաղած պաշտոնից:

Սահմանել, վոր այն բոլոր դեպքերում, յերբ ՀամԿ(բ)Կ-ից վտարելու հարակցությամբ անհրաժեշտ է լինում աշխատողին ազատել իր զբաղած պաշտոնից, այդ ազատումը կարող է կատարվել նրան ուրիշ աշխատանք տրամադրելուց հետո միայն:

10. Պարտավորեցնել մարզկոմներին, յերկրկոմներին, ազգային կոմկուսակցու-



թյունների կենտկոմներին՝ վոչ ուշ քան մինչև 1938 թվի փետրվարի 15-ը համապատասխան խորհրդային ու տնտեսական օրգանների միջոցով ապահովել ՀամԿ(բ)Կ-ից վտարվածների աշխատանքի մտնելը և այսուհետև թույլ չտալ այնպիսի դրություն, վոր ՀամԿ(բ)Կ-ից վտարվածներն աշխատանքից զրկված մնան:

## ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԱՌԱՋԻՆ ԳՈՒՄԱՐՄԱՆ ԱՌԱՋԻՆ ՆՍՏԱՇՐՋԱՆԸ

## ԽՍՀՄ ԺՈՂԿՈՄԽՈՐՀԻ ՆԱԽԱԳԱՀ, ՊԱՏԳԱՄԱՎՈՐ

# ԸՆԿԵՐ Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ՃԱՌԸ

(Պատգամավորները յերկարատև ովացիա յեն անում ԽՍՀՄ ժողկոմխորհի նախագահ ընկեր Մոլոտովին: Բոլորը վոտքի յեն կանգնում. հնչում են բացականչություններ՝ «Ժողկոմխորհի նախագահ ընկեր Մոլոտովին — ուռա՛»: Բուռն ծափահարություններ. «Ուռա» բացականչություններ):

*Ընկերնե՛ր, մենք այժմ քննարկում ենք մեծ հարց, վորքան վոր գործը վերաբերում է մեր Սահմանադրությանը, մեր հիմնա-*



*կան որենքին: Սահմանադրության առանձին հոդվածներին վերաբերող մի քանի փոփոխությունների և լրացումների մասին Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի և Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի վորոշումները, վորոնք ներկայացված են ձեր հաստատությանը, վերաբերում են գլխավորապես կազմակերպական — ադմինիստրատիվ հարցերին, բայց նրանք փոփոխություններ են մտցնում մի քանի Միութենական Հանրապետությունների ներքին ադմինիստրատիվ բաժանման մեջ, վերաբերում են Համամիութենական պետական ապարատին և շոշափում են Միության ժողովուրդների կենսական շահերը:*

*Ընկ. Գորկինի զեկուցման մեջ և հանրապետությունների ներկայացուցիչների յելույթներում արդեն բավականաչափ լուսաբանված են ադմինիստրատիվ բաժանման և ՌՍՖՍՀ-ում, Ուկրաինայում, Ուզբեկստանում, Ղազախստանում ու Բելոռուսիայում մի շարք նոր մարզերի ստեղծման վերաբերող հարցերը: Յես կանգ կառնեմ Համամիութենական մարմինների աշխատանքի և Համամիութենական նոր ժողկոմատներ ստեղծելու հետ կապված հարցերի վրա:*

Միության 1924 թվականին ընդունած առաջին Սահմանադրությամբ մեզ մոտ ըստեղծվեց 12 ժողկոմատ և Պետական Պլանային Հանձնաժողով: Այն ժամանակվանից շատ բան է փոխվել երկրի կյանքում, պետական աշխատանքի թափը շատ է մեծացել: Ընդունելով այժմ Գերագույն Խորհրդի հաստատությանը ներկայացված վորոշումները, մենք Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի կազմում կունենանք ժողկոմատների, կոմիտեների և մշտական հանձնաժողովների, ներառյալ Պետպլան ու Խորհրդային Վերահսկողության Հանձնաժողով, 26 ղեկավարներ: Բացի դրանից, Ժողովրդական Կոմիսարների Խորհրդին կից գոյություն ունեն համապետական 9 կազմակերպություններ, վորոնք անմիջականորեն նրան են ենթակա: Այս բոլորի մեջ իրենց արտացոլումն են գտել վոչ միայն ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության հսկայական աճը, այլև երկրի ռազմական պաշտպանության խնդիրների աճը, և համապատասխան այդ բոլորին՝ պետական ղեկավարման ավելի մեծ դիֆերենցիացիայի պահանջը, վորն



անխուսափելիորեն կազմակերպչական նոր ձևեր է պահանջում:

Թե վորքան արագ է աճում մեր տնտեսությունը և վորքան ընդլայնվում են մեր խնդիրներն այդ տեսակետից, երևում է թեկուզ և հետևյալից: Խորհուրդների Համամիութենական 8-րդ Արտակարգ Համագումարի կողմից մեր Սահմանադրությունը հաստատելու օրվանից անցել է մեկ տարուց մի քիչ ավելի և մենք արդեն կանգնած ենք ինչպես միութենական հանրապետություններում, այնպես և համամիութենական պետական ապարատում մի շարք նոր կազմակերպական – ադմինիստրատիվ միջոցառումներ անցկացնելու անհրաժեշտության առաջ:

Ամենքին հայտնի յե, թե ինչպիսի մեծ ճանապարհ է անցել այդ տարիների ընթացքում մեր ինդուստրիան: Այդ առանձնապես վերաբերում է ծանր արդյունաբերությանը, վորն ընթացել է ժողովրդական տնտեսության բոլոր մյուս ճյուղերի առաջից: Այդ բանի հետևանքով Ծանր արդյունաբերության ժողկոմատը, մինչև մեքենաշինությունը նրանից առանձնացնելը, դարձել եր անչափ մեծ կազմակերպություն ինդուս-

տրխայի արագ զարգացող հսկայական քանակությամբ ճյուղերով: Նույնիսկ այժմ, յերբ Ծանր արդյունաբերության ժողկոմատից արդեն առանձնացված է մեքենաշինությունը և ստեղծված է մեքենաշինության ժողովրդական կոմիսարիատ, նույնիսկ այժմ Ծանր արդյունաբերության ժողկոմատը ամենախոշոր արդյունաբերական ժողկոմատն է, մի ժողկոմատ, վորը տալիս է հսկայական քանակությամբ և ըստ վորում խիստ բազմազան արտադրանք:

Չի կարելի չհամաձայնել այն բանի հետ, վոր արագ աճող մեքենաշինությունը, վորի հետագա արագ զարգացման մեջ այնպես շահագրգռված են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, ներկայիս պայմաններում կարելի չե ճիշտ կազմակերպել միայն հատուկ ժողկոմատի ոգնությամբ: Այդ են ապացուցում հետևյալ թվերը: Յեթե վերցնենք միայն յերկու հնգամյակները— առաջին և յերկրորդ հնգամյակի ժամանակաշրջանը, ապա միայն այդ ժամանակի ընթացքում, այսինքն սկսած 1928 թվից, մեքենաշինությունը Խորհրդային Միության մեջ աճել է 13 ու կես անգամ, իսկ դուք գիտեք, վոր տեխնիկական վերակառուցման



պահանջները դեռ ամենևին ել չեն բավարարվել, և վոր այդ պահանջները շարունակում են արագորեն աճել: Ըստ եյության, մենք արդեն ունենք մեքենաշինարարական տիպի յերկու խոշոր կոմիսարիատ: Ամենից առաջ պետք է խոսել Պաշտպանական Արդյունաբերության Ժողովրդական Կոմիսարիատի մասին— այդ նույնպես գլխավորապես մեքենաշինական կոմիսարիատ է: Նա ստեղծված է դեռևս մեր Սահմանադրությունն ընդունելու ժամանակ, սրանից մեկ տարուց մի քիչ ավելի առաջ, բայց նա արդեն ծանրաբեռնված է աշխատանքով, այսպես ասած մինչև կոկորդը: Նա տալիս է հարկավոր մեքենաներ ու սարքավորումներ, Կարմիր Բանակի ու Նավատորմի համար և արտադրում է վոչ փոքր քանակությամբ, այլ առավելապես մեքենաշինական արտադրանքներ: Մենք հարկադրված յեղանք, սակայն, ստեղծելու Մեքենաշինության հատուկ ժողկոմատ, վորովհետև տեխնիկայի, մեքենաների, դազգահների մեր պահանջներն անսահմանափակ են: Հիշեցնեմ նաև, վոր Համամիութենական և միութենական – հանրապետական այլ ժողկոմատներ ել, ինչպես նաև տեղական ար-

գյուղատնտեսության ժողկոմատները վոչ վո-
քըր քանակությամբ մեքենաներ և զանազան
սարքավորում են արտադրում: Մեր յերկ-
րում հետագա տեխնիկական վերակառու-
ցում անցկացնելու մեջ առաջատար տեղն
այժմ պատկանում է Մեքենաշինության
ժողկոմատին, վորն ստեղծված է մի քանի
ամիս առաջ: Մենք կարծում ենք, վոր Գե-
րագույն Խորհուրդը հավանություն կտա
Մեքենաշինության ժողկոմատ ստեղծելու
վորոշմանը (ծափահարություններ):

Յերկրորդ ժողկոմատը, վորի մասին խոս-
վում է Գերագույն Խորհրդի հաստատու-
թյան ներկայացված առաջարկություննե-
րում— Մթերումների ժողովրդական կոմի-
սարիատն է:

Արդեն ներկայիս տեսքով ԽՍՀ Միու-
թյան Ժողկոմխորհին կից Գյուղատնտեսա-
կան Մթերումների Կոմիտեն— ժողկոմա-
տական տիպի կազմակերպություն է, այդ
բառի լրիվ իմաստով: Նա ունի իր
հանրապետական որգանները, յերկրային ու
մարզային, ինչպես նաև շրջանային որգան-
ները: Իրականության մեջ այդ ընդհանուր
Միութենական մեծ ժողկոմատ է, վորն,



ինչպես դուք գիտեք, քիչ աշխատանք չու-
նի:
Մթերումների բնագավառում խնդիրների
աճը կապված է մեր գյուղատնտեսության
վերելքի հետ: Վերցնենք առաջին և յերկ-
րորդ հնգամյակների ավելի ճիշտ, վերջին
9 տարվա շրջանում գյուղատնտեսական մը-
թերումների աճին վերաբերող փաստերը:
Այդ շրջանում հացահատիկի մթերումն ա-
ճել է 2,5 անգամ, ինչպես շաքարի ճակըն-
դեղի, այնպես էլ կարտոֆիլի մթերումն
ավելացել է յերկու անգամ, բամբակի մը-
թերումն ավելացել է յերեք անգամ:
Այժմ, յերբ մեր բերքն սկսել է արագո-
րեն բարձրանալ, վորովհետև կոլտնտեսա-
յին կարգն արդեն բերում է իր առաջին
հասուն պտուղները, յերբ կոլտնտեսություն
ներն ու խորհտնտեսություններն արդեն
վոտքի յեն կանգնել, նրանք իրենց ինչպես
հարկն է ցույց կտան ամբողջ գյուղատըն-
տեսական, այդ թվում նաև անասնաբու-
ծական արտադրանքի աճի մեջ (ծափահա-
րություններ):
Կոլտնտեսություններն արդեն սկսել են
հաջողությամբ իրագործել կոլտնտեսական-
ների ունևոր կյանքի ստեղծման մեծ խըն-

դիրը: Ամուր կոլտնտեսություններ և ունևոր կոլտնտեսականներ— այս տեսակ փաստերի արագ աճը աչքի յե զարնում: Այդպիսի կոլտնտեսությունները կկարողանան ավելի լավ ապահովել և պետական կարիքները:

Հիմնական արտադրանքի մթերումները, վորոնցով մատակարարվում ե բնակչությունը, վորոնցով մատակարարվում ե մեր արդյունաբերությունը, վորոնք հարկավոր են պետության բազմաթիվ կարեվորագույն պահանջմունքների համար,— այդ այնպիսի գործ ե, վորն որ-որի աճում ե, դառնում ե ավելի ու ավելի լուրջ: Միության հսկայական տերիտորիայում մթերումների գործի կազմակերպումը բարդ, մեծ գործ ե: Այդ գործում մենք դեռևս քիչ խոշոր թերություններ չունենք: Մթերումների կազմակերպման գործի արագ բարելավումը ձեռնտու յե ամբողջ պետությանը, և ձեռնտու յե բուն իսկ գյուղատնտեսությանը, ձեռնտու յե կոլտնտեսություններին ու կոլտնտեսականներին: Հարկավոր ե ժողկոմատ, վորն այդ գործը կարգավորի ինչպես հարկն ե, վորը բարելավի իր տեղական և կենտրոնական ապարատը, վորը պա-



տասխանատու լինի մթերումների ամբողջ
գործի կատարմանը: Դրանով ե բացատր-
վում Մթերման ժողկոմատ ստեղծելու ա-
ռաջարկը:
Այժմ անցնում եմ Պետական բանկին:
Մեր Պետական բանկը, այդ արդեն հըս-
կայական կազմակերպություն ե, վորին
հավասարը չկա վոչ մի պետության մեջ
այդ բնագավառում: Պետբանկը բոլոր հան-
րապետություններում, յերկրամասերում և
մարզերում և գրեթե բոլոր շրջաններում
ունի իր հիմնարկները: Այդ մեր ֆինան-
սական սիստեմի հսկայական, ճյուղավոր-
ված ապարատն ե: Նրա աշխատանքն ա-
ռաջնակարգ նշանակություն ունի ժողո-
վրդական տնտեսության զարգացման հա-
մար, մանավանդ առեվտրի զարգացման,
ապրանքաշրջանառության ծավալման հա-
մար, թե քաղաքին և թե գյուղին արդյու-
նաբերական և պարենային ապրանքներ մա-
տակարարելու համար: Ժողովրդական տըն-
տեսության աճման հետ միասին, քաղաքի և
գյուղի աշխատավորների պահանջների ա-
րագ աճման հետ միասին աճում են նաև
Պետական բանկի խնդիրները:
Մի քանի թվերից մենք կարող ենք տես-

նել, թե վերջին տարիներում ինչ է տեղի ունեցել այդ բնագավառում:

Պետական բանկի շրջանառությունները, յեթե վերցնենք միայն Պետբանկի հաշվարկումները ժողովրդական տնտեսության հետ, առանց ներբանկային հաշվարկումների,— վերջին ութ տարում աճել են 13 անգամ: 1928—29 թվականին ժողովրդական տնտեսության հետ Պետբանկի հաշվարկումները կազմում եյին հարյուր յոթանասուն վեց միլիարդ վեց հարյուր վաթսուն յերկու միլիոն յերկու հարյուր տասնինը հազար ռուբլի (176·662·219·000), իսկ 1936 թվին դրանք կազմում են յերկու տրիլյոն հարյուր տասնհինգ միլիարդ յոթ հարյուր իննսունյերեք միլիոն ութ հարյուր ութսունվեց հազար ռ. (2·115·793·886·000 ռուբլի):

Այսպես է աճել Պետական բանկի աշխատանքի մասշտաբը:

Պետական բանկը մեզանում ըստ տրադիցիայի, ըստ հին սովորության համարվում է Ֆինանսների Ժողկոմատի ներսում յեղած կազմակերպություններից մեկը, կարծես թե նա չունի ինքնուրույն նշանակություն, կարծես թե նա չի հանդիսանում վարկա-



յին-ֆինանսական ինքնուրույն կազմակերպություն: Իրականում այդ ի հարկե այդպես չէ:

Մյուս կողմից հենց Ֆինանսների Ժողովրդական Կոմիսարիատի աշխատանքի մասշտաբը տարեց-տարի աճել է հսկայական չափով և շարունակում է աճել: Այդ մասին պերճախոս կերպով ասում են մեր պետության բյուջեյի մասին յեղած տվյալները:

Յեթե վերցնենք մեր ամբողջ բյուջեն, այսինքն հանրապետական և տեղական բյուջեների հետ միասին ներառյալ Միութենականը, ապա կստանանք այսպիսի պատկեր. 1928—1929 թ. թ. մեր այդ բյուջեն յեղել է 7,5 միլիարդ ռուբլի, իսկ անցած 1937 թվին, նախնական հաշվով, այն արդեն հասավ 101 միլիարդ ռուբլու, այսինքն այդ ինը տարվա ընթացքում աճեց 13 անգամ (ծափահարություններ):

Յեթե մեզանում չլիներ պետական, հանրապետական և տեղական բյուջեների այդպիսի արագ աճ, յեթե չլիներ Պետական բանկի վարկային շրջանառությունների այդպիսի արագ աճ, վորոնց մասին մենք այժմ խոսում ենք, մեզանում չեր կարող

այնպիսի արագ տեմպերով աճել մեր տնտեսությունը, մեր կուլտուրական շինարարությունը և չէր կարող այնպես արագ ամրապնդվել յերկրի պաշտպանությունը, ինչպես այդ յեղել է վերջին այս բոլոր տարիներում:

Պետական բյուջեն և Պետական բանկի ֆինանսական շրջանառությունները, ինչպես հայտնի, արտացոլում են այն, ինչ վոր տեղի յե ունենում Խորհուրդների յերկրում,— հասարակ թվերով, ճիշտ է, բավական սոլիդ, բավական պատկառելի, բավական հեղինակավոր թվերով:

Դրանից, ընկերներ, պետք է անել մի քանի կազմակերպչական հետևություններ: Մենք կարծես թե մտադիր չենք կըրճատելու Պետական բանկի շրջանառությունները, այլ ցանկանում ենք դրանց հետագա աճը: Մենք կարծես թե մտադիր չենք կրճատելու նաև մեր բյուջեն, այլ ուզում ենք առաջ գնալ փորձված ուղիով, պատշաճորեն ֆինանսավորելով պետության աճող պահանջները, ապահովելով բնակչության ել ավելի լավ աճող պահանջները: Այս պատճառով հարց է ծագում, վոր պետք է ավելի մեծ ինքնուրույնություն



տրվի մի այնպիսի կարևոր ֆինանսական կազմակերպության, ինչպիսին է Պետական բանկը: Դրանից առաջ է գալիս Պետական բանկը Ֆինանսների Ժողովրդական Կոմիսարիատից բաժանելու, նրան անհրաժեշտ ինքնուրույնություն տալու և ուրեմն Միության մեջ վարկային գործի ղեկավարման համար նրա վրա ավելի մեծ պատասխանատվություն դնելու անհրաժեշտությունը,— Պետբանկը յենթարկելով անմիջականորեն Ժողկոմխորհին և նրա ղեկավարին վճռական ձայն տալով Ժողովրդական Կոմիսարների Խորհրդում, Ժողովրդական Կոմիսարիատի իրավունքներով: Այդ բոլորը թույլ է տալիս հուսալու, վոր Գերագույն Խորհուրդը հավանություն կտա մեր առաջարկին, վորպես ճիշտ, վորպես իր ժամանակին արված առաջարկի (ծափահարություններ):

Այնուհետև դարձյալ ելի մի նոր Ժողկոմատ ստեղծելու մասին, Ռազմա-Ծովային Նավատորմի Ժողովրդական կոմիսարիատ ստեղծելու մասին: Չի կարելի չընդունել, վոր դա ես չափազանց կարևոր և չափազանց հասունացած հարց է: Մեզանում հիմա կա չորս ռազմա-ծովային նավատորմ,

— Բալտիկյան, Սևծովյան, Հյուսիսային և Խաղաղօվկիանոսյան: Թվում է, թե այդ քիչ չէ մեկ յերկրի համար, մանավանդ, վոր մեր ծովային նավատորմիղներն անմիջական առնչություն ունեն նաև մի քանի ովկիանոսների հետ: Սակայն մենք միայն վերջին տարիներս կարողացանք ինչպես հարկն է ձեռնամուխ լինել ծովային նավատորմի շինարարության: Թե՛ Բալտիկյան, թե՛ Սևծովյան, թե՛ Հյուսիսային և թե՛ Խաղաղօվկիանոսյան նավատորմերն արդեն սկսել են աճել այնպես, ինչպես վայել է խորհրդային մեծ պետությանը: Նրանք ուժեղ կերպով լրացվում են նոր միավորներով, առայժմ ավելի մանր, բայց ահա կավարտենք վորոշ նոր գործարանների շինարարությունը, — վորոնք կաշխատենք ավելի շուտ կառուցել, — և կսկսենք մեր նավատորմերը լրացնել ավելի արագ և այն էլ ծովային հզոր միավորներով (բուռն ծափահարություններ):

Մենք պետք է հաշվի առնենք այն, վոր մեր յերկիրը մեծ է, վոր նա հսկայական տարածության վրա շրջապատված է ծովերով, և այդ մեզ միշտ հիշեցնում է այն մասին, վոր մեզանում նավատորմը պետք



է լինի ամրակուռ, ուժեղ (բուռն ծափահարություններ): Այդ մասին կապիտալիստական պետությունները ևս մեզ հիշեցնում են նրանով, վոր վերջին տարիներս նրանք ռազմա-ծովային հսկայական շինարարություն են ծավալել: Մենք չենք մտածում անտարբեր մնալ դեպի այդ փաստը, մանավանդ վոր իմպերիալիստական պետությունները վոչ մի կերպ չեն կարողանում համաձայնության գալ ռազմածովային շինարարության ուժեղացման դեմ վորոշ սահմանափակումների մասին: Օրինակ, այնպիսի մի ագրեսիվ պետություն, ինչպիսին Ճապոնիան է, մինչև այժմ հրաժարվում է ծովային սպառազինումների սահմանափակման վորևէ մասնակցություն ունենալուց: Մինչև այժմ, չնայելով ամեն տեսակ միջազգային կոնֆերենցիաներին, — հիշեցնենք թեկուզ 1936 թվի Լոնդոնի կոնֆերենցիան ծովային սպառազինումները սահմանափակելու հարցերի շուրջը, — մեր Հեռավոր Արևելյան հարևանի՝ Ճապոնիայի համար ծովային սպառազինումների վոչ մի սահմանափակում չկա: Մի՞թե մենք չպետք է հաշվի առնենք այդ փաստը: Ակներև է, դուք կասեք, վոր մեր աշխատանքում

մենք, ինչպես հարկն է, պետք է հաշվի առնենք այդ հանգամանքը (ծափահարություններ)։

Ահա մի ուրիշ փաստ։ Չնայելով 1936 թ. Լոնդոնի կոնֆերենցիային ձևականորեն մասնակցելուն, ֆաշիստական Իտալիան նույնպես, ամեն տեսակ վոչ լուրջ պատճառաբանություններով հրաժարվում եր ուրիշ յերկրների հետ վորևէ համաձայնություն ստորագրել ծովային սպառազինումների սահմանափակման մասին։ Իսկ չե՞ վոր Իտալիան հավակնում է, վորպեսզի առանց հսկողության տեր ու տնօրեն լինի ամբողջ Միջերկրական ծովում, վոր չի կարող չշոշափել Խորհրդային Միության խորագույն շահերը։ Մի՞թե մենք չպետք է մեր վորոշումներում հաշվի առնենք նաև այդ փաստը (ծափահարություններ)։

Ասում են, թե ֆաշիստական Գերմանիան ծովային համաձայնություն է ստորագրել, սակայն մենք դեռ պետք է նայենք, թե ինչ արժեք ունի այդ ստորագրությունը (ծիծաղ, ծափահարություններ)։

Համենայն դեպս, այդ բոլորն ասում են, վոր մենք պետք է ունենանք ռազմա-ծովային ուժեղ նավատորմ (ծափահարություններ)։



Մենք գտնում ենք այսպես.—գլխավորն այն է, վոր մեր պետական նավը լինի ամրակուռ և հզոր, իսկ այն, ինչպես մենք գիտենք, ամրակուռ է և ավելի յե ամրապընդվում (բուռն ծափահարություններ)։ Մեր խորհրդային իրավակարգը հզոր է և ուզում է լինել ավելի հզոր, ուզում է լինել թշնամիներին անմատչելի (բուռն, յերկարատև ծափահարություններ)։ Դրանից մենք անում ենք այն հետևությունը, վոր մեզ հարկավոր է ուժեղ Կարմիր Բանակ և մեզ հարկավոր է ուժեղ ռազմա-ծովային նավատորմ (յերկարատև ծափահարություններ)։ Խորհրդային հզոր պետությունը պետք է ունենա իր շահերին համապատասխանող, մեր մեծ գործին արժանի ծովային և ովկիանոսային նավատորմ (յերկարատև ծափահարություններ)։

Վորպեսզի կազմակերպել այդ նավատորմն իր տեխնիկական բարձր հագեցվածությամբ, իր ծովային հզոր հրետանիով, խորհրդային նավատորմին համապատասխան իր ծովային ավիացիայով (բուռն ծափահարություններ) և վորպեսզի խորհըրդային ձևով դաստիարակել վորակյալ ծովագնացների և ծովային տեխնիկների բազ-

մաթիվ կադրերը, հարկավոր է նոր ժողկոմատ, հարկավոր է Ռազմա-Ծովային Նավատորմի Ժողկոմատ (ծափահարություններ)։

Հենց այն պատճառով, վոր աճել է մեր Կարմիր Բանակը, վոր այստեղ ևս հարկավոր է ամենօրյա հսկայական աշխատանք նրա հետագա ամրապնդման, նրա հետագա տեխնիկական հագեցվածության համար,— հարկավոր է շատ ավելի լավ աշխատանք՝ բոլշևիկորեն դաստիարակելու Հայրենիքին նվիրված կարմիր բանակայիններին և հրամանատարներին, հենց այն պատճառով, վոր Կարմիր Բանակում այդ ամբողջ գործի ղեկավարությունը հսկայական խնդիրներ ունի իր առաջ, իսկ ռազմա-ծովային նավատորմը պահանջում է հատուկ և այն էլ ուժեղ ուշադրություն դեպի իրեն, մենք անհրաժեշտ ենք համարում, բացի Պաշտպանության Ժողկոմատից, ունենալ Ռազմա-Ծովային Նավատորմի Ժողկոմատ (բուռն, յերկարատև ծափահարություններ)։

Մեր խնդիրն է՝ էլ ավելի բարձրացնել Խորհրդային Միության ցամաքային սահմանների և ծովափերի պաշտպանության



գործը։ Հույս ունենք, վոր մեր ծովայինները պատվով կկատարեն իրենց խնդիրը, իսկ Ծովային Նավատորմի Ժողկոմատը համառորեն և անդուլ կերպով կաշխատի խորհրդային ռազմա-ծովային ուժեղ նավատորմ ստեղծելու վրա (յերկարատև ծափահարություններ)։

Վերջապես, ընկեր պատգամավորներ, եկեք մի քանի խոսք այն առաջարկներից մեկի առթիվ, վորոնք առաջադրվում են ձեր հաստատությանը, այն է՝ Սահմանադրության 49-րդ հոդվածի լրացման մասին։ Խնդիրը վերաբերում է նրան, վոր այդ հոդվածը լրացվի այն ցուցումով, վոր Գերագույն Խորհրդի Նախագահությունը պետք է իրավունք ունենա լուծելու ռազմական դրություն մտցնելու հարցը,— այնտեղ, ուր այդ հարկավոր կլինի։

Դուք գիտեք, վոր վերջին տարիներում դրսից վոչ վոք չի հարձակվել Խորհրդային Միության վրա, թեպետ և իմպերիալիստական ագրեսորների կողմից զանազան տեսակ պրովոկացիաների պակասություն չի յեղել։ Ուստի և չի յեղել մատնանշված ձեռնարկումների և այդ առթիվ հատուկ վորոշումների պահանջ։ Յեվ այնուամեն-

նայլիվ մենք պետք է ինչ-ինչ բաներ նախատեսենք հնարավոր բարդությունների նկատմամբ: Այս պատճառով ինձ թվում է, վոր ձեզ համար հասկանալի և միանգամայն ընդունելի յե այն առաջարկը, վոր մտցվում է այդ հարցի շուրջը (միահամուռ ծափահարություններ):

Ահա, ընկերներ, այն հարցերը, վորոնց վրա յես պետք է կանգ առնեյի Սահմանադրության մեջ փոփոխություններ մտցնելու կապակցությամբ:

Մենք ունենք խորհրդային լավ Սահմանադրություն, ուստի և ժողովուրդն այն անվանեց Ստալինյան Սահմանադրություն (փոթորկալից, յերկար ժամանակ չլռող ծափահարություններ, բոլորը վոտքի յեն կանգնում, բացականչություններ՝ «Ուռա», «Կեցցե՛ ընկեր ՍՏԱԼԻՆԸ»):

Կյանքն այնուամենայնիվ իր հերթին ընթանում է դեպի առաջ: Մեր յերկիրն աճում է որեցոր և կազմակերպչական նոր ձևեր է պահանջում: Դրանից ել հետևում են այն փոփոխություններն ու լրացումները, վոր մտցվում է մեր Սահմանադրության մեջ: Այդ անհրաժեշտ է: Այդ համապատասխանում է այն հանգամանքին, վոր



մեր խորհրդային իրավակարգն աճում է, ամրապնդվում և կատարելագործվում:

Այդ բոլորի մեջ մենք տեսնում ենք այն գործի ուժն ու նշանակությունը, վորը հիմա գտնվում է մեր ձեռքում, աշխատավորների ձեռքում,— այդ բոլորի մեջ մենք տեսնում ենք Լենինի-Ստալինի գործի մեծ նշանակությունը և հզոր ուժը: (Փոթորկալից, յերկարատև ծափահարություններ, բոլորը վոտքի յեն կանգնում, բացականչություններ «Ուռա», «Կեցցե՛ ընկեր ՍՏԱԼԻՆԸ», «Կեցցե՛ ընկեր ՄՈԼՈՏՈՎԸ»):

# ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԱՌԱՋԻՆ ԳՈՒՄԱՐՄԱՆ ԱՌԱՋԻՆ ՆՍՏԱՇՐՋԱՆԸ

# ՊԱՏԳԱՄԱՎՈՐ ԸՆԿԵՐ Ա. Ա. ԺԴԱՆՈՎԻ ՃԱՌԸ

*Գերագույն Խորհրդի ընկեր պատգամավորներ: Այն հայտարարությունը, վոր Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի անունից հրապարակեց այստեղ նախագահողը, ստորագրված Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահ Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովի կողմից, կառավարության կողմից, լիազորությունները վայր դնելու մասին, լրիվին համապատասխան է մեր հիմնական օրենքի—ԽՍՀՄ Սահմանադրության հետ:*

*Յես կարծում եմ, վոր հայտնած կլինեմ Գերագույն Խորհրդի բոլոր պատգամավոր-*



*ների ընդհանուր կարծիքը, յեթե ասեմ, վոր Գերագույն Խորհուրդը միահամուռ է Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նըկատմամբ ունեցած իր վստահության արտահայտման մեջ:*

(Դահլիճում ներկա գտնվողները վոտքի յեն կանգնում, բուռն կերպով ծափահարում են, ծափահարությունները վերածվում են ովացիայի, բացականչություններ «ուռա»):

ՁԱՅՆԵՐ՝ ՏԵՂԵՐԻՑ.— *Կեցցե Գերագույն Խորհրդի պատգամավոր* Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովը (բուռն ծափահարություններ, բացականչություններ «ուռա»):

*Ընկերներ, մեր մեծ Հայրենիքի ժողովրդական մասսաները, վորոնք մեզ վորպես իրենց ընտրյալների ուղարկել են Խորհրդային Միության Գերագույն Խորհուրդ, դեկտեմբերի 12-ի ընտրություններին միահամուռ կերպով իրենց ձայներն են տվել այն քաղաքականության պաշտպանության օգտին, վոր անց է կացրել և անց է կացնում Խորհրդային կառավարությունը, Լենինյան-Ստալինյան կուսակցության և Խորհրդային իշխանության քաղաքականության օգտին, այդ քաղաքականության*

հետևողական կիրառման ուղին, ինչպես արտաքին, այնպես էլ ներքին գործերում, ի բարօրություն մեր մեծ Հայրենիքի (բուռն ծափահարություններ)։

Յես առաջարկություն եմ մտցնում, վորպեսզի հանձնարարվի Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովին, Գերագույն Խորհրդին ներկայացնելու իր առաջարկությունները, Կառավարության կազմի—ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի մասին։

(Բոլոր ներկա գտնվողները վոտքի յեն կանգնում, բուռն ծափահարություններ, ծափահարությունները վերածվում են ովացիայի, բացականչություններ «ուռա»)։

Ընկերնե՛ր, Կառավարության—ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդ—կազմելու մասին հարցի քննարկման կապակցությամբ, յես կուզեյի մի շարք դիտողություններ անել վորոշ ժողկոմատների գործունեյության մասին։ Ինչպես յերևում է դրությունն այնպես է, վոր առանձին դեֆեկտներ և ստվերոտ կողմեր կան մեր մի շարք ժողկոմատներում։

Յես խոսք եմ վերցրել, վորպես Լենինգրադի պատգամավոր։ Գուցե մեզ, տեղա-



կան աշխատողներիս համար մեր ժողկոմատների գործունեյության մեջ ամեն ինչ չէ, վոր պարզ է և ամեն ինչ չէ, վոր հասկանալի յէ, բայց ասում են, վոր կողմից դիտելիս վորոշ բաներ ավելի լավ յեն յերևում։

Յես կուզեյի մի քանի խոսք ասել Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատի գործունեյության մասին։

Ընկերներ, յես կարծում եմ, վոր մենք տարբեր կարծիքի չենք այն բանի առթիվ, վոր Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատը մեր Խորհրդային Կառավարության ղեկավարությամբ կիրառում է խաղաղության հետևողական քաղաքականություն և վոր մեր հարգելի ժողկոմ Մաքսիմ Մաքսիմովիչ Լիտվինովը հսկայական ծառայություններ ունի խորհրդային պետության խաղաղության քաղաքականությունը կիրառելու գործում։ (Բուռն ծափահարություններ, բոլոր պատգամավորները վոտքի յեն կանգնում)։

Յես մի քանի հարցեր ունեմ, վորոնք վերաբերում են Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատի գործունեյու-

թյանը, վորոնց առթիվ յես կուզեյի պարզաբանում ստանալ:

Առաջին հարցը, վորի առթիվ յես կուզեյի պարզաբանում ստանալ, մեզ մոտ, Լենինգրադում կան զանազան ոտարերկրյա պետությունների մեծ քանակությամբ հյուպատոսներ: Մեզ մոտ, Լենինգրադում գրեթե ամեն մի ոտարերկրյա պետություն ունի իր հյուպատոսը: Ըստ վորում յես պետք է ասեմ, վոր այդ հյուպատոսների մի մասը բացահայտորեն դուրս են գալիս իրենց լիազորությունների և պարտավորությունների շրջանակներից և իրենց անթույլատրելի կերպով են պահում, զբաղվելով քայքայիչ գործունեյությամբ, ընդդեմ այն ժողովրդի և յերկրի, վորին նրանք ներկայացված են:

Հայտնի յե նաև, վոր ԽՍՀՄ-ն այդ յերկրներում չունի հավասար քանակությամբ հյուպատոսներ: Իմ մեջ հարց է ծագում: Ինչո՞ւ յե այդ այդպես: Ինչո՞ւ Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատն այնպիսի դրություն է թույլ տալիս, վորի դեպքում ԽՍՀՄ-ում՝ ոտարերկրյա պետությունների կողմից ներկայացված հյուպատոսների թիվը հավասար չե, այլ ավելի յե



ոտարերկրյա պետություններում ԽՍՀՄ-ի ներկայացված հյուպատոսների թվից:

Մեր սոցիալիստական մեծ պետության ուժից ու հզորությունից չի՞ հետևում արդյոք արտասահմանյան յերկրներում ինչպես մեր, այնպես և արտասահմանյան հյուպատոսական ներկայացուցչությունների հավասարություն: (Ծափահարություններ):

Անցնում եմ յերկրորդ հարցին, վորի մասին յես ուզում եյի վորոշ բացատրություն ստանալ: Յես կարծում եմ, վոր Արտգործժողկոմատը պետք է ավելի վճռական լիներ, Ճապոնիայի և այսպես կոչված մարիոնետական Մանչժոու-Գոյի գործակալների լկտի խուլիգանական և պրովոկացիոն յելույթների հանդեպ (բուռն ծափահարություններ):

Ընկերներ, դիտելով Հեռավոր Արևելքում մեր հարաբերությունների պարզացումը, մենք բոլորս տեսնում ենք, վոր հաղվադեպ են այնպիսի որերը, յերբ մեր արևելյան սահմանների վրա տեղի չունենա վորևէ հերթական պրովոկացիոն յելույթ Ճապոնիայի և այսպես կոչված Մանչժոու-Գոյի գործակալների կողմից:

Այս ե ցույց տալիս, թեկուզ և ժողովուրդների հարաբերակցության և իրավունքի հանրածանոթ նորմաների միանգամայն ապորինի և կոպիտ խախտման ու վոտնահարման վերջին փաստը՝ մեր քաղաքացիական ինքնաթիռի պրովոկացիոն արգելափակման փաստը, ինքնաթիռ, վորն ուղևորներ ու փոստ եր տանում: Վորքան մեզ հայտնի յե, մինչև այժմ ինքնաթիռը և նրա մեջ գտնվող բեռները վերադարձնելու նկատմամբ գործնական միջոցներ ձեռք չեն առնվել:

Ինձ թվում ե, վոր մեր յերկրի բոլոր աշխատավորների հասարակական կարծիքը միահամուռ կերպով այն ե՝ վորպեսզի մեր դիվանագիտության գծով գործնական միջոցներ ձեռք առնվեն մեր արևելյան սահմանում հարաբերություններն այնպես կարգավորելու համար, վորոնք մեկ անգամ ընդմիշտ անհնարին դարձնեն ճապոնական իմպերիալիզմի խուլիգանություն անող գործակալների վորևիցե պրովոկացիոն ելույթները (հավանության բուռն նշաններ):

Այնուհետև, ընկերնե՛ր, յես չեմ հասկանում, թե ինչ ե կատարվում այժմ Ֆրան-



սիայում: Ինչպե՞ս հասկանալ դրությունը, յերբ այն յերկրի կառավարությունը, վորի հետ ԽՍՀՄ-ը՝ մենք բավականին սերտ հարաբերությունների մեջ ենք գտնվում և վորի հետ մեզ մոտ կարծես թե մերձեցում ե կատարվում, իր տերիտորիայում թույլ ե տալիս այնպիսի կազմակերպությունների գոյությունը, վորոնք տեռորիզմ են կազմակերպում ու քարոզում ԽՍՀՄ-ի դեմ:

Ասում են, վոր այդ արվում ե ոտարերկրացիներին ապաստարան տալու իրավունքի որենքի հիման վրա: Ինձ թվում ե, վոր այդ այդպես չե: Ինձ թվում ե, վոր Ֆրանսիական տերիտորիայում՝ այն պետության տերիտորիայում, վորի հետ մենք գտնվում ենք նորմալ հարաբերությունների մեջ, վորի հետ մենք փոխադարձ ոգնության պակտ ունենք,—այդպիսի կազմակերպության գոյության փաստը ներկայացնում ե վոչ այլ ինչ, յեթե վոչ ռուսական և վոչ ռուսական ծագում ունեցող ամեն տեսակ սրիկաների թշնամական ակտիվ գործունեությանը հատուկ և ակնհայտնի կերպով խրախուսանք ցույց տալ մի կառավարության կողմից, վորի հետ մենք փոխադարձ ոգնության պակտ ունենք:

Այս ե ցույց տալիս, թեկուզ և ժողովուրդների հարաբերակցության և իրավունքի հանրածանոթ նորմաների միանգամայն ապորինի և կոպիտ խախտման ու վոտնահարման վերջին փաստը՝ մեր քաղաքացիական ինքնաթիռի պրովոկացիոն արգելափակման փաստը, ինքնաթիռ, վորն ուղևորներ ու փոստ եր տանում: Վորքան մեզ հայտնի յե, մինչև այժմ ինքնաթիռը և նրա մեջ գտնվող բեռները վերադարձնելու նկատմամբ գործնական միջոցներ ձեռք չեն առնվել:

Ինձ թվում ե, վոր մեր յերկրի բոլոր աշխատավորների հասարակական կարծիքը միահամուռ կերպով այն ե՝ վորպեսզի մեր դիվանագիտության գծով գործնական միջոցներ ձեռք առնվեն մեր արևելյան սահմանում հարաբերություններն այնպես կարգավորելու համար, վորոնք մեկ անգամ ընդմիշտ անհնարին դարձնեն ճապոնական իմպերիալիզմի խուլիգանության անող գործակալների վորևիցե պրովոկացիոն յելույթները (հավանության բուռն նշաններ):

Այնուհետև, ընկերնե՛ր, յես չեմ հասկանում, թե ինչ ե կատարվում այժմ Ֆրան-



սիայում: Ինչպե՞ս հասկանալ դրությունը, յերբ այն յերկրի կառավարությունը, վորի հետ ԽՍՀՄ-ը՝ մենք բավականին սերտ հարաբերությունների մեջ ենք գտնվում և վորի հետ մեզ մոտ կարծես թե մերձեցում ե կատարվում, իր տերիտորիայում թույլ ե տալիս այնպիսի կազմակերպությունների գոյությունը, վորոնք տեռորիզմ են կազմակերպում ու քարոզում ԽՍՀՄ-ի դեմ:

Ասում են, վոր այդ արվում ե ոտարերկրացիներին ապաստարան տալու իրավունքի որենքի հիման վրա: Ինձ թվում ե, վոր այդ այդպես չե: Ինձ թվում ե, վոր Ֆրանսիական տերիտորիայում՝ այն պետության տերիտորիայում, վորի հետ մենք գտնվում ենք նորմալ հարաբերությունների մեջ, վորի հետ մենք փոխադարձ ոգնության պակտ ունենք,—այդպիսի կազմակերպության գոյության փաստը ներկայացնում ե վոչ այլ ինչ, յեթե վոչ ռուսական և վոչ ռուսական ծագում ունեցող ամեն տեսակ սրիկաների թշնամական ակտիվ գործունեյությանը հատուկ և ակնհայտնի կերպով խրախուսանք ցույց տալ մի կառավարության կողմից, վորի հետ մենք փոխադարձ ոգնության պակտ ունենք:

Յեվ այստեղ մենք պետք է հարցնենք, գոյություն ունի՞ այդ պակտը, թե վոչ, իրականում կա՞ այդ պակտը, թե չկա: Յեվ յես կցանկանայի, վորպեսզի ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահն ուշադրություն դարձներ այդ դեֆեկտների վրա և դրանք վերացնելու համար համապատասխան միջոցներ ձեռք առներ (ծափահարություններ):

Ընկերներ, յես կուզեյի մի քանի խոսք ասել նաև մի այլ կոմիսարիատի գործունեյության մասին, վորը մեծ նշանակություն ունի մեր ժողովրդական տնտեսության համար: Յես նկատի ունեմ Ջրային Տրանսպորտի Ժողովրդական Կոմիսարիատը:

Կարծում եմ մեզ մոտ, Խորհրդային Միության հարավում, դեռևս նավագնացությունը չի փակվել: Յես նկատի ունեմ Կասպից ծովը, ինչպես նաև մյուս ծովերն ու գետերը, վորոնք գտնվում են մեր Խորհրդային Միության հարավում: Իսկ միևնույն ժամանակ, յերբ նայում ես Ջրային Տրանսպորտի Ժողովրդական Կոմիսարիատի գործունեյությանը, այնպիսի տպավորություն է ստացվում, վոր ընդհանրապես



ամեն բան և ամենուրեք սառել է, կարծես թե սառել են մեր Խորհրդային Միությունը վողողող գետերը, ծովերը և ովկիանոսները (ծափահարություններ):

Յես ուզում եմ ասել, վոր Ջրային Տրանսպորտի Ժողովրդական Կոմիսարիատի տնորինության տակ գտնվող տրանսպորտային միջոցներն ոգտագործվում են չափազանց անբավարար: Ավարիաները, վորոնց աճի վրա բազմիցս Ջրային Տրանսպորտի Ժողկոմատի ուշադրությունն են հրավիրել թե՛ կառավարությունը, թե՛ կուսակցությունը, թե՛ խորհրդային հասարակայնությունը, այդ ավարիաները շարունակում են ջրային տրանսպորտի պատուհաս լինել: Այն վնասը, վոր Ջրային Տրանսպորտի Ժողկոմատն իր գործունեյության մեջ ունեցել է 1933 թվին և նրա կողմից բացատրվել է ամեն տեսակ ոբյեկտիվ պայմանների վկայաբերումներով, ինչպես որինակ, 1936 թվի սակավաջրությունը, այդ վնասը պակասելու տենդենց չունեցավ նաև 1937 թվին, վորը թվում է թե Խորհրդային Միության ինչպես ծովերում, այնպես և գետերում, բոլոր կողմերից բարենպաստ եր նավագնացության համար:

Ես պետք է ուշադրություն դարձնեմ այն փաստի վրա, որ նավթի փոխադրությունները, վորոնք այնքան հսկայական նշանակություն ունեն մեր յերկրի ժողովրդական տնտեսության համար, այժմ գտնվում են այնպիսի դրության մեջ, վոր Բաքվից հյուսիսի համար որական 12 հազ. տոնն նավթամթերքներ բեռնելու փոխարեն, այժմ որական, չնայած փոխադրության և տոննաժի լիովին բավարար քանակին, բեռնըվում է միայն 4 հազար տոնն: Այդ հարկադրում է նավթը հետ վերադարձնել նավթային պահեստները, այնտեղ պահելու համար, վորովհետև Ջրային Տրանսպորտի Ժողկոմատն այն չի ընդունում բեռնելու համար:

Ցես կուզեյի ուշադրություն դարձնել ջրային տրանսպորտում յերկաթասարդ. կաղբեր առաջ քաշելու և պատրաստելու գործի խիստ անբավարար դրության վրա: Այդ մասին շատ է խոսում մեր խորհրդային հասարակայնությունը, շատ է գրում մեր մամուլը:

Ընկերնե՛ր, մենք համբերատար մարդիկ ենք, բայց այն ծանծաղուտից, վորի վրա մի քանի տարիների ընթացքում նստել է



Ջրային Տրանսպորտի Ժողկոմատը հարկավոր է ավելի արագ կերպով իջնել (ծիծաղ) և առաջ գնալ, յեթե վոչ ամենաարագ, ապա համենայն դեպս, վոչ այնպիսի դանդաղ ընթացքով, վորով Ջրային Տրանսպորտի Ժողկոմատն է առաջ տանում մեր ջրային տրանսպորտի նավերը: Այդ տեսակետից անհրաժեշտ է հաղթահարել այն հանդստությունն ու բարեհոգությունը, վորը զգալի չափով յուրահատուկ է մեր Ժողկոմատին ու նրա ղեկավարությանը և նախազգուշացնել, վոր յեթե այդպես շարունակվի—ջրային տրանսպորտի դրության գործը, ապա հասարակական համբերությունը կարող է պայթել և յեթե գործը մինչև հաջորդ նստաշրջանը չուղղվի, ապա չլինի թե Ջրային Տրանսպորտի Ժողովրդական Կոմիսարիատի ղեկավարության նըկատմամբ կկուն ավելի շուտ կանչի (ծիծաղ):

Ցես չեմ պահանջում անմիջապես հանել Ժողովրդական կոմիսարին, բայց կարծում եմ, վոր Գերագույն Խորհուրդը պետք է այդ տեսակետից Ջրային Տրանսպորտի Ժողովրդական Կոմիսարիատին նախազգուշացնի զգալիորեն ավելի լավ աշխատելու

անհրաժեշտության մասին, քան նա աշխատում է մինչև այժմ:

Խորհրդային աշխատանքի մի ճյուղ էլ կա, որը չափազանց կարևոր նշանակություն ունի: Ես նկատի ունեմ խորհրդային արվեստը: Հայտնի է, թե խորհրդային արվեստն ինչպիսի հսկայական նշանակություն ունի մեր ժողովրդի համար: Հայտնի է, որ խորհրդային արվեստի զարգացումը կապված է մեր յերկրի աշխատավորների աճող կուլտուրական պահանջների բավարարման հետ: Բոլորը գիտեն, որ խորհրդային արվեստի այդ աճը սոցիալիզմի հաղթանակի հետ սերտ կապի մեջ է գտնվում, սոցիալիզմ, որը մարդկային բոլոր պահանջների աճի ու զարգացման համար և նրանց բավարարման համար տալիս է անսահմանափակ հնարավորություններ:

Կուլտուրական պահանջների աճի հետ համապատասխան, արվեստի մեջ տեղի է ունենում յերիտասարդ տաղանդների աճը: Մենք բոլորս վկա յենք այն բանին, թե ինչպիսի սերմ ծաղկի նման մեր յերկրում ծաղկում է շնորհալի և տաղանդավոր յերիտասարդությունը: Խորհրդային իշխա-



նությունը, խորհրդային կառավարությունը բոլոր միութենական հանրապետություններում չթուլացող ուշադրությամբ ու հոգատարությամբ են շրջապատում մեր արվեստը: Ես կարծում եմ, որ դրա վրա յես կարիք չունեմ ծանրանալու — այդ ամենքին պարզ է:

Այս պայմաններում ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդին կից Արվեստի Գործերի Կոմիտեն պետք է իսկական աշխատանք ծավալեր և բացառիկ բարենպաստ պայմաններն օգտագործեր խորհրդային արվեստի զարգացման համար, որպեսզի իրոք մեծ գործեր կատարեր: Իսկ յեթե վերցնենք Արվեստի Գործերի Կոմիտեի ղեկավարությունը և կոմիտեի նախագահին՝ ընկ. Կերժենցևին, ինչպես որ նա այժմ կա, ապա յես չգիտեմ, թերևս այդ ղեկավարությունը մեր Խորհրդային Միության փոքր քաղաքում, յերկրամասում, մարզում և Միութենական Հանրապետություններում զգացվում է, բայց մենք Լենինգրադում այդ ղեկավարությունը չենք զգում (ծիծաղ):

Վերցնենք թեկուզ և ռեպերտուարի գաղափարական կայունության հարցը: Ամենքը

Տպչում են հակապատմական և քաղաքականորեն յերկերեսանի «Բոգատիրներ» պիեսի բեմադրության պատմությունը, մի պիես, վորի մեջ իսկական ծաղր եր կազմակերպված ռուս ժողովրդի պատմության նկատմամբ: Հայտնի յե Մեյերխոլդի խորհրդային արվեստին խորթ թատրոնի լիկվիդացիայի մասին վերջերս ընդունված վորոշումը: Անհասկանալի յե, սակայն, թե ինչո՞ւ Արվեստի Գործերի Կոմիտեն և նրա ղեկավար ընկ. Կերժենցևն այդքան յերկար ժամանակի ընթացքում թույլ եյին տալիս իրենց քթի տակ, Մոսկվայում, այդ թատրոնի գոյությունը, վորն իր ծամածռություններով և տրյուկայնությամբ աշխատում եր գռեհկացնել կլասիկ ռեպերտուարի պիեսները, վորը չի ստեղծել իսկական խորհրդային և վո՛չ մի պիես, քայքայել ե թատրոնի դերասանական կոլեկտիվը և միևնույն ժամանակ վայելում եր Արվեստի Գործերի Կոմիտեյի անխոնջ ոգնությունը, վորը նրան շարունակ պետական լայն նըպաստներ եր տրամադրում: Մի՞թե այդ չի վկայում, վոր Արվեստի Գործերի Կոմիտեյի ղեկավարությունն անբավարար վիճակում ե գտնվում:



Ցես կուզեյի մատնանշել նաև վերջերս տեղի ունեցած մի փաստ, յերբ դաշնակահարների կոնկուրսի կապակցությամբ Կոմիտեյի նախագահ ընկ. Կերժենցևն առանց վորևե հիմնավորման կոնկուրսին մասնակցելուց զրկել ե մի շարք յերիտասարդ յերաժիշտների միմիայն այն բանի համար, վոր այդ յերաժիշտներից մի քանիսն ինչ վոր մի ժամանակ, ինչ վոր մի տեղ հեռավոր բարեկամներ են ունեցել, վորոնք բավականաչափ կայուն չեն յեղել քաղաքական տեսակետից և այդ շատ հեռավոր ազգականների մեղքերի համար, վորոնցից շատերը մեռել են սրանից մի քանի տասնյակ տարի առաջ, ընկ. Կերժենցևը տրամադիր եր յեղել տույժի յենթարկել այդ յերիտասարդ տաղանդավոր մարդկանց և այդ հիման վրա նրանց թույլ չտալ մասնակցելու կոնկուրսին:

Սա ի՞նչ ե,— ղեկավարություն ե թե՞ ղեկավարության նկատմամբ պարոդիա,— իրավունք ունենք հարցնելու մենք:

Վերջերս Արվեստի Գործերի Կոմիտեյի նախագահ ընկ. Կերժենցևը փորձում եր փակել Մոսկվայի կոնսերվատորիային կից ազգային կադրերի բաժանմունքը: Այդ փակումը նախապատրաստվում եր հակառակ

արվեստի ազգային կադրերը զարգացնելու գործին ամեն կերպ ոժանդակություն ցույց տալու վերաբերյալ խորհրդային կառավարության բազմիցս արած մատնանշումներին:

Յես կարծում եմ, վոր այս փաստերը բավական են, վորպեսզի հարց տանք,—հարկավո՞ր է մեզ արդյոք Արվեստի Գործերի այդպիսի նախագահ և ո՞վ է նա, Արվեստի գործերի Կոմիտեյի ղեկավա՞րը, թե՞ կոմիվայաժոր (ծիծաղ): Արվեստի Գործերի Կոմիտեյի անհաջող նախագահ ունենք մենք (ձայներ, ճիշտ է, ծափահարություններ):

Յես կարծում եմ, վոր մենք կարող ենք մեր յերկրում արվեստի գործերի այնպիսի ղեկավարություն ապահովել, վորը լիովին համապատասխանի այդ մեծ և պանծալի խնդրի՝ նշանակությանն ու բովանդակությանը:

Յես կարծում եմ, վոր Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահը հաշվի կառնի իմ քննադատական դիտողությունները Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի հետագա աշխատանքում, վորպեսզի առանձին ժողովրդական կոմիսարիատների գործունեյության մեջ յեղած այդ դեֆեկտներն ուղղվեն (ծափահարություններ):





Պատ. խմբագիր ԲԱԼԱԲԵԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Քարտուղար Հ. ԴՌՆՈՅԱՆ
Հանձնված է տպագր. 15 փետր. 1938 թ.
ՊԱՏՎԵՐ— 151 ՏԻՐԱԺ 8381
ԳԼԱՎԼԻՏԻ ԼԻԱԶՈՐ ՑԵ.—3901

«ԽՈՐՀՐԴ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ.
ՏՊԱՐԱՆ, ՅԵՐԵՎԱՆ

ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչություն «Խորհրդ. Հայաստան»

ԲԱՑՎԱԾ Ե 1938 Թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.
6 » . 3 »
3 » . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին: